# ԵՐԳ ՆՈՐ ՏԱՐՎԱ

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ*

Ձմռան գիշերով, բարությամբ ձմռան
Իմ դուռը բախեց ահա Նոր տարին,
Ես երազանքով փարվեցի նրան
Ու երգ դարձրի կարոտս լռին:
Նրա առաջին թեթև քայլի մեջ
Ես գարուն տեսա ծաղկաբույր ու զով
Եվ ուրախություն խմեցի կարծես
Անհաս երկնքի աստղալույս թասով:
Նոր հրաշքներով լցված Նոր տարի,
Խաղաղությունը քո այս գիշերվա
Ես ուզում եմ, որ ձեռքով քո բարի
Բաժանես բոլոր օրերիդ վրա:
Ես ուզում եմ, որ այս գիշերվա պես
Երազանք փռես լույսի ու գարնան,
Արար աշխարհը դու խաղաղ պահես...
Թող մանուկները հանգիստ մեծանան:
Ես ուզում եմ, որ կյանքում ամեն տեղ
Դու դառնաս խորին անդորր ու ամառ՝
Խաղաղությամբ է մայրությունն անմեղ
Օրորներ երգում մանկության համար:
Գնա՛, Նոր տարի, զնգոցով զվարթ,
Դաշտերը քնած քեզ ձայն են տալիս,
Բարություն է նա ու պայծառ հավատ,
Ում ճանապարհով գարունն է գալիս:

*Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*



# ԱՆԴՐԱՆԻԿԻ ՁԵՌԱԳԻՐԸ

ՕԼԳԱ ՍԱՆԱՀՅԱՆ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Ճիշտն ասած, գլխիս եկածների մասին չեմ սիրում պատմել, բայց եթե դու չես պատմում, ուրիշներն են պատմում, թեկուզ հենց հարազատ քույրդ։ Պատմում են չափազանցնելով, իրենցից ավելացնելով, հետո էլ ծիծաղում, քրքջում։ Եվ եթե դրանից փրկություն չկա, ավելի լավ չի՞ լինի, որ հենց ինքս պատմեմ, կպատմեմ, գոնե սիրտս էլ կհանգստանա, ճիշտ չե՞մ ասում։ Դե, ուրեմն, լսեցեք։

Իմ արկածներն սկսվեցին առաջին դասարանից, երբ սովորեցի անունս գրել. ու դրանից հետո այլևս հանգիստ չունեի, անունս գրում էի ամեն տեղ և ամեն ինչով՝ մատիտով, ապակիով, դանակով, երկաթալարի ծայրով, մեխով, գրչահատով, ներկով, պատահել է՝ նույնիսկ մազութով։ Կրճատ էլ գրում էի՝ «Անդրո»։ Մի անգամ ձյուն-ձմեռ էր, առավոտյան դպրոց գնալիս, մայթի եզրին, որտեղով դեռ ոչ ոք չէր անցել, ոտքերս իրար ետև դնելով, ձյունի վրա անունս մեծ-մեծ տառերով գրեցի, բայց նոր էի հեռացել, որ մի փոքրիկ սև շուն ցատկելով եկավ ու հենց անունիս վրա ոտը բարձրացրեց... մինչև վազեցի, որ քշեմ, էլ ինչ...

Եվ դրանից հետո էլ քանի՛-քանի անգամ եմ ընկել այդպիսի տհաճությունների մեջ, պատմեմ դրանցից մեկը։

Ամառային արձակուրդներին էր, ես ու ընկերս այդ օրը որոշել էինք գնալ մանկական այգի, և երբ տնից պետք է դուրս գայի, մայրիկս ասաց.

— Իսկ ինչու՞ Գոհարիկին չես տանում, էլ ո՞ր օրվա եղբայրն ես։

Ես դրան սպասում էի ու հերսոտ ասացի.

— Ինչու՞ պետք է տանեմ։ Մեջ է ընկնում ամեն ինչում, շատախոսում, տղաներին կռվեցնում...

— Մայրիկ ջան, սուտ է ասում,— պաղատեց Գոհարիկը։

Բայց ինչ, ես արդեն տնից դուրս էի եկել։

Մոտեցա ընկերոջս՝ Բաբկենենց դռանը (մենք նույն շենքում ենք ապրում) թխկացրի ու ներս մտա։

Բայց այստեղ էլ նույն խոսակցությունն էր գնում։

— Իսկ ինչու՞ Լուսիկին էլ չտանեք, թող նա էլ գա ձեզ հետ,— ասում էր Բաբկենի մայրը տղային։

Բաբկենը նայեց ինձ, նայեց քրոջը՝ Լուսիկին ու երկդիմի հարցրեց.

— Տանե՞նք։

Ճիշտն ասած, Բաբկենը դժվար գործերը միշտ ինձ վրա է գցում։ Լուսիկը լարված ինձ էր նայում, և ես կարմրելով ասացի.

— Տանենք։

Բայց այստեղ նա երես առավ և իսկույն վրա բերեց.

— Իսկ Գոհարի՞կը։ Թող նա էլ գա։— Ու վազեց մեր տուն։

Ես ու Բաբկենը իրար նայեցինք, խոսելն օգուտ չուներ։

Աղջիկները եկան։

— Դե գնա՛նք, գնա՛նք, — ասացին նրանք միասին, կարծես իրենք էին մեզ տանում և ոչ թե մենք՝ նրանց։ Եվ երբ ավտոբուսն եկավ, դարձյալ իրար անցած, հրամայեցին՝

— Բարձրացե՛ք, բարձրացե՛ք։

Ես ու Բաբկենը հնազանդ բարձրացանք ավտոբուս։ Նրանք նստեցին մեր առջևի նստարանին, մենք նստեցինք ետևի։ Բայց նստեցին թե չէ, ըսկըսեցին քրքջալ, ուղղակի խեղդվում են։ Դրանց հետ մարդ տե՞ղ կգնա։

— Ի՞նչ է, ի՞նչ կա, — հարցրեց Բաբկենը ծուռը նայելով նրանց։

— Նայիր, — Սեդան ցույց տվեց իրենց դիմացի նստարանի թիկնակը, — սա Անդրանիկի ձեռագիրն է, — և որպեսզի ծիծաղը խլացնի, ձեռքը սեղմեց բերանին։

Ես տեղումս քարացա. հիշեցի այն օրը, երբ կինոյից վերադառնալիս, գրչահատով անունս փորագրեցի ավտոբուսի թիկնակին։ Եվ հիմա՝ խընդրեմ, այդ նույն ավտոբուսն է։ Ես նայեցի չարաբաստիկ «Անդրո»-ին և քրտնեցի, տոմսավաճառը մոտենում էր, աղջիկները քրքջում էին։ Ես տեղիցս ելա։

— Ո՞ւր, — հարցրեց Բաբկենը՝ ծուռը նայելով ինձ։

— Իջնում եմ։

Դա ազդեցություն գործեց, աղջիկները դադարեցրին ծիծաղը։ Որպեսզի ուշադրություն չգրավեմ, ես նստեցի։

Բայց աղջիկները այդ տեսնելով, նորից երես առան, նրանք այժմ ցածրաձայն քչփչում էին, և ես հասկացա, որ դարձյալ իմ մասին է, կարճ ասած, իմ սիրելի քույրը Լուսիկին պատմում էր իշուկի պատմությունը...

Ես դարձյալ մտքով ետ գնացի... Մի անգամ մեր բակը գազար ծախող էր եկել. նրա իշուկն այնքան լա՜վն էր՝ սիրուն աչքերով, սև, փայլուն մաշկով. ես չդիմացա, գրպանիցս հանեցն կավիճը և գրեցի...





Գոհարիկն էլ էր այդտեղ հասել, քանի որ Լուսիկն անհամբեր քչփչաց.

— Որտե՞ղ գրեց։ Մեջքի՞ն։

— Չէ, պոչի մոտերքը։

— Հի՛, հի՛, հի՛, հետո՞...

— Հետո, իշուկը որ քացով չխփե՜ց...

Այստեղ արդեն Բաբկենն էլ չդիմացավ ու երեքով թուլանում են։

— Այդ ի՞նչ լավ եք ծիծաղում, երեխեք, ինձ էլ պատմեցեք, ես էլ ծիծաղեմ,— ասաց տոմսավաճառ կինը՝ ժպտալով նստելով մեզ մոտ։

— Ինչու չէ,— ասաց իմ քույրը.— լինում է չի լինում մի իշուկ, նա տիրոջ հետ գալիս է մեր բակը գազար ծախելու...

Ես վեր կացա տեղիցս ու Բաբկենի ոտքերը տրորելով, գնացի դեպի դուռը, որպեսզի ավտոբուսից թռչեմ։ Բայց այդ միջոցին ավտոբուսը դանդաղեցրեց ընթացքը, կանգ առավ, մենք հասել էինք։

Ցած իջա ավտոբուսից, հանգիստ շունչ քաշեցի։ Բոլորից էլ խռովել էի, չէի ուզում հետները խոսել ու արագ քայլելով, մտա՝ մանկական այգին։

Զովասուն ծառուղիներում լիքը մանուկներ էին, մանուկներ ամեն տեսակի՝ մեկ տարեկանից ըսկըսած։

Ետևիցս թփթփոց լսեցի, նրանք էին։ Չորս կողմ նայելով, վազ տալով, գալիս են, ինձ են փնտրում։

Ես կանգ առա պաղպաղակի կրպակի մոտ ու արհամարհելով նայեցի նրանց։ Եկան շարվեցին մոտս։

— Ո՞ւր եկաք հավաքվեցիք։ Միայն ես եմ ուտելու։ Մեկ է, ձեզ համար չեմ առնի։

— Մայրիկը բոլորիս համար է դրամը տվել,— ասաց իմ քույրը։ — Մայրիկին կասեմ։

— Այդ էր պակաս, որ դու ուտես, մենք նայենք,— հանգիստ քրթմնջաց Բաբկենը։ — Ապա փորձիր։— Նա սպառնալից նայեց ինձ։ (Նա ինձնից մեծ էր մեկ տարով)։

Լուսիկը բացեց փոքրիկ, կարմիր պայուսակը, սկսեց այնտեղ ինչ-որ բան փնտրել։ Չէ՛, չեղավ։

— Ըհը, խեղճացաք, չէ՞։ Դե լավ, ձեզ համար էլ կառնեմ, մեղք եք։ Ես ձեզ նման չեմ...

Նրանք հաղթական գնացին ազատ սեղանի մոտ, նստեցին ու անհամբերությամբ նայում էին իմ կողմը։ Ես գնեցի երեք բաժին պաղպաղակ և դրեցի Բաբկենի ու Լուսիկի առջև։ Երրորդը վերցրի ինձ։

— Իսկ ի՞մ բաժինը,— հարցրեց Գոհարիկը։

— Դու քո բաժինը կերար ավտոբուսում,— պատասխանեցի ես՝ գդալով լիքը պաղպաղակը դնելով բերանս։

— Դե լավ, Անդրանիկ, խելոք կմնամ, էլ ոչինչ չեմ պատմի...— կմկմաց նա։

— Մի՛ խանգարի,— բղավեցի ես։

Սակայն այդ միջոցին նրա առջև հայտնվեց պաղպաղակի թասը։ Լուսիկը իր բաժինը տվել էր նրան, իսկ ինքը դարձյալ սկսել էր իր կարմիր պայուսակի մեջ կոպեկներ փնտրել։

Չէ, էլի չեղավ։ Ես ստիպված վեր կացա գնացի կրպակը և մի բաժին էլ՝ բերեցի։ Աղջիկները փռթկացին։ Ես ատելությամբ նայեցի նրանց։

Երբ պաղպաղակը կերանք, քայլեցինք դեպի կարուսելը և չորսով էլ հեծանք ձիերին, բայց կարուսելի շարժվելու ժամանակ, նկատեցի, որ ձիուս դնչից սկսած մինչև պարանոցը քերծված է, սպիտակ տախտակն է երևում և խեղճ ձիս խղճալի տպավորություն էր թողնում, ասես մի մեծ վերք ունենար, անբանի մեկը, որը անունն էլ չգիտեր ճիշտ գրել, խզմզել էր՝ «Վարթկես»։ Ես իսկույն ցած իջա ձիուց, բայց ոչ մի ազատ ձի չկար, բոլորին հեծել էին արդեն։

— Ի՞նչ պատահեց,— հարցրեց Գոհարիկը։ Ես պատմեցի։

— Հենց քեզ շատ էլ հարմար է, հի՜, հի՜, հի՜։ Իզուր իջար։

Ես նրան թաքուն բռունցք ցույց տվի։

Այդ ժամանակ կարուսելը շարժվեց, ես մնացի կանգնած, աչքերս շաղվում էին գույնզգույն պըտըտվող ձիերից, առյուծներից, սայլակներից ու

երեխաների ուրախ կանչերից։ Իմ ձին մենակ, առանց հեծյալի վազում էր աննպատակ, և ես խղճացի նրան։ Կարծես հերիք չէր, որ այդ օրն էին գցել, դեռ բանի տեղ էլ չէին դնում։ Երբ կարուսելը ետ էր դառնում, այդ ձին, այդ սպիտակաբաշը, թափով գալիս էր ինձ վրա, ասես ես էի հանցավորը։ Շատ տխուր էի։

Դուրս գալով կարուսելի հրապարակից՝ ես մի բաժին պաղպաղակ գնեցի։ Շատ լավ էլ արեցի։

Կարուսելը վերջապես կանգնեց, մերոնք եկան, ինձ գտան, ես պաղպաղակը վերջացրել էի, բայց ինչ եք կարծում, իմ սիրելի քրոջ աչքից կարո՞ղ է որևէ բան վրիպել։

— Իսկ եթե փորդ ցավի, — ոչ այս, ոչ այն, ասաց նա, — կա-չկա էլի ես պաղպաղակ կերել։

Ես ձեռքս ակամա տարա շրթունքներիս. թաց էին։

Ու երեքով նայում էին ինձ։ Ախ այդ Գոհարը, թող մի տուն հասնենք։

Այդ ժամանակ Լուսիկն ասաց.

— Գուլպաներիս մեջ ավազ է լցվել, ուզում եմ թափ տալ։ — Նա նստեց նստարանին, հանեց գուլպան, նախ՝ մեկը, հետո՝ մյուսը, բայց հենց այդ ժամանակ թարսի նման աչքը գցեց դիմացի ծառին ու կարդաց... «Անդրո»։ «Անդրո», — կրկնեց նա՝ ասես չհավատալով տեսածին։ Ես վախեցած նայեցի ծառին՝ «Անդրո»։

— Քո՛ ձեռագիրն է, քո՛ ձեռագիրն է — ճչաց Լուսիկը։ Ես սակվել էի։ Պաշտպանվելն անօգուտ էր։

Ես այժմ այնպես էի ատում այդ անունը, ինձ այնպես էր այլևս զզվեցրել, որ րոպե առաջ ուզեցի մաքրել ծառի վրայից։

Կոշիկներս հանեցի, մի րոպեում բարձրացա ծառը։ Երբ ես անունս փորագրել էի ծառի վրա, երկրորդ դասարանում էի, այդ օրվանից անցել էր երեք տարի, ծառի բունը այն ժամանակ կարճ էր, իսկ այժմ առանց նրա վրա բարձրանալու ձեռքս չէր հասնի։ Ես տեղավորվեցի ճյուղերի մեջ, հանեցի գրչահատս և թեթևակի, որպեսզի խորը չգնա, տառերը քերեցի։ Եվ երբ իջնում էի ծառից, ձեռքս գցեցի վերին ճյուղին, և այդ պահին ասես մատներս մտան կրակի մեջ ու այդ կրակից ասես դեղին կայծեր թռան։ Ծառի փչակում կրետի բուն էր եղել, նրանք բզզալով շրջապատեցին

# Ո՞Ր ԱՄԻՍՆ ԵՄ

ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Եղբայրներ ենք մենք տասներկու,
Սակայն նման չենք մեկ-մեկու,
Սիրում ենք գործ, ծիծաղ ու երգ...
Ճանապարհ ենք ընկնում մեկ-մեկ.
Թե որ մեկը նամփին հոգնի,
Մյուսն իսկույն նրան կօգնի։
Բոլորից մեծ եղբայրն եմ ես,
Բայց առույգ եմ, զվարթ ձեզ պես։
Երբ դառնում է տարին կլոր,
Ես հագնում եմ սպիտակ շոր,
Իմ ընկերն են բուք ու ձմեռ՝
Ծածկում եմ ես դաշտեր ու լեռ։
Բերում եմ ես խաղեր, սահնակ,
Ձմեռ պապի, ձյունե տնակ։
Ես բարի եմ, մի՛ վախեցեք,
Ո՞ր ամիսն եմ, դե ասացեք։

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ



հնծ, զազազած պտտվեցին, նստեցին գլխիս, ոտքերիս:

— Վա՛յ, վա՛յ, — ճչում էի ես, միայն մի ձեռքով կարողանալով պաշտպանվել:

— Քեզ ցա՛ծ գցիր ծառից, ցա՛ծ գծիր, — ճչում էին բոլորը:

Ես թռա՝ կրետները հետս: Բաբկենը թաշկինակով քշում էր նրանց, բայց կրետները պոկ չէին գալիս ինձնից: Այլևս ուժ չկար վրաս, ես լալիս էի, աչքս այրվում էր, այրվում էր թուշս, քիթս, ականջիս մոտ: Իսկ շուրջս վախեցած աչքեր՝ Լուսիկի Բաբկենի և շատ ու շատ անծանոթ երեխաների: Գոհարիկն աչքերն էր սրբում: Դե արի ու հասկացիր:

— Վազեցեք այգու բուժքրոջ մոտ, — ասաց մի կին՝ մոտենալով մեզ:

— Պետք չի, գնանք տուն, շուտ, — ասացի ես և քայլեցի դեպի այգու մուտքը՝ երեխաների մի խումբ ետևիցս:

Բարեբախտաբար ավտոբուսը շուտ եկավ:

Ես բարձրացա ավտոբուս և երբ նայեցի ապակիների մեջ, ինձ չճանաչեցի: Աչքս փակվել էր, թուշս ուռել, ճակատիս վրա՝ մի բլրակ...

Բայց մեղուներն ինձ չհասկացան, բոլորովին չհասկացան: Թե՞ հին մեղքերիս համար էր...

# ՑՐՏԱՑՎԱԾ ՇՈՒՇԱՆ

(Քրիստիան Անդերսենի կյանքից)

ԿԱՐԼԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ

Դուրակի՛ մոտ, ճյուղակոտոր ծառի տակ, մոռացված սունկի նման կանգնած էր մի աղջիկ: Մայրիկի ձևած ու վերաձևած զգեստները հազիվ էին ծածկում փոքրիկի մերկությունը: Նրա քիթը ցրտից կապտել էր: Ոչ ոք նրանից բոված շագանակ չէր առնում: Իսկ քիչ հեռու, հաստլիկ երշիկավաճառը եռում էր խնդությունից: Նավթավառի վրա՝ կաթսայիկում շոգեհարվող ուռած ու փքված նրբերշիկները հրապուրում էին շուկա շտապող գեղջկուհիներին: Աղջիկն հազիվ էր զսպում այն կողմ նայելու ցանկությունը: Իսկ հաստլիկը կարծես դիտավորյալ, ավելի հաճախ էր ճղճղան ձայնով հիշեցնում «տաք ու փափուկ» երշիկների մասին, որ ատված ուղարկել էր հատկապես կաթի հոտով բուրող մթեբավաճառուհիների համար:

— Իմ խեղճ չբացված շուշան...— Աղջիկը ցնցվեց: Խոսողը կանգնած էր նրա առաջ երկար ու լղարիկ, աքաղաղի կտուցի նման սուր քթով: Նա աղջկան էր նայում իր կապույտ, թափանցիկ աչքերով:

— Ի՞նչ է նարկավոր պարոն.— շշնջաց աղջիկը:

— Ոչինչ...— ասաց մարդը և շփոթված ցանկացավ հիշել, ինչու՞ մոտեցավ աղջկան:

— Շագանակներ գնեք պարոն...— խնդրեց աղջիկը:— Այսօր ոչ մի հատ չեմ վաճառել... Դեռ տաք են... Հորաքույրս է բովել: Բոլորն ասում են, որ հորաքույր Հաննան հիանալի շագանակ բովող է...



Նկ. ՌՈԲԵՐՏ ԱՅՎԱԶՅԱՆԻ

Ու մինչ պարոնը դրամ էր փնտրում և ոչ մի տեղ չէր գտնում, աղջիկը նրա վերարկուի գրպանը շագանակով լցրեց: Պարոնը անհամբերությունից շիկնել էր: Փոքրիկ շագանակավաճառուհին և նա միմյանց էին նայում մեղավորի հայացքով:

— Պարզվում է, որ պետք է հրաժարվեմ այսքան լավ բոված շագանակներից: Մոտս դրամ չկա:—

Այս ասելով նա ձեռքը տարավ դեպի գրպանը, բայց աղջիկը կախվեց թևից.

— Ո՛չ, ո՛չ, հարկավոր չէ...

Զարմանալի պարոնը ծունկի իջավ փոքրիկ աղջկա առաջ և իր խոշոր ափերի մեջ առավ նրա մանրիկ թաթիկները.

— Ինչպե՞ս է քո անունը, չբացված շուշան:

— Քրիստինե:

— Բարի Քրիստինե: Ինձ էլ Քրիստիան Անդերսեն են անվանում: Տեսնու՞մ ես, նույնիսկ մեր անուններն են նման...

— Անդերսե՞ն...

— Ուզու՞մ ես, հենց հիմա քեզ մի լավ հեքիաթ նվիրեմ, այնպիսին, որ դեռ ոչ ոք չի լսել:

Աղջիկը ծիծաղեց: Ծիծաղեց և Անդերսենը, այնպես, որ հաստլիկ երշիկավաճառը դադարեց գեղջկուհիների հետ շաղակրատելուց ու կասկածանքով հոտոտեց օդը, թե այդ մտերմիկ ծիծաղից կասկածելի հոտ չի՞ գալիս:

Երբ Անդերսենը հեռացավ, հաստլիկը իր մոտ կանչեց Քրիստինեին ու սկսեց հարցուփորձ անել.

— Եթե չես ուզում հորաքրոջդ պատմեմ, պետք է ասես, ի՞նչ էիք խոսում:

— Նա ինձ հեքիաթ էր պատմում, այնպիսին, որ դեռ ոչ ոք չի լսել: Հեքիաթը միայն ինձ նվիրեց և խոստացավ ոչ մի անգամ չտպագրել, ախր, նա ինքը՝ հեքիաթագիր Անդերսենն էր: — Հաստլիկը դրանից իրոք դրամի հոտ առավ: Չէ՞ որ կարելի էր այդ չգրված հեքիաթը պատմել որևէ թերթի և դիմացը դրամ ստանալ:

— Էհ, դու, պստլիկ կաչաղակ,— քմծիծաղեց հաստլիկը,— հավատու՞մ ես, որ նա կհրաժարվի դրա դիմաց մի չաղլիկ գումար ստանալուց:

— Նա փողասեր չէ,— պաշտպանեց աղջիկը:— Նույնիսկ դրամ չուներ շագանակ գնելու, ես նրան շագանակը առանց դրամի վաճառեցի...

— Առանց դրամի, հա՛, հա՛... լավ է խաբել...

— Չհամարձակվե՛ք,— վրդովվեց աղջիկը և ուզեց հեռանալ:

— Լավ, լավ, մի՛ նեղացիր,— կեղծավորաբար մեղմացավ հաստլիկը:— Երևում է քո այդ հեքիաթագիրը այնքան էլ վատ մարդ չէ... Հաշտվենք: Արի քեզ մի «տաքուկ-փափուկ» նրբերշիկ հյուրասիրեմ:

Քրիստինեն, մայրիկի մահվանից հետո, առաջին անգամ էր ճաշակում այդպես լավ պատրաստված նրբերշիկ: Իսկ երբ պատմում էր իրեն նվիրված հեքիաթը, հաստլիկը նրան մեկնեց երկրորդ նրբերշիկը: Երրորդը Քրիստինեն չստացավ, երևի երշիկավաճառը որոշել էր, որ հեքիաթն այդքան չարժե...

...Մի քանի օր հետո երշիկավաճառը Քրիստինեին ցույց տվեց մանր առևտրականների համար լույս տեսնող մի լրագիր, որտեղ տպագրված էր շագանակավաճառ աղջկան նվիրված հեքիաթը: Դրա դիմաց հաստլիկը երկու հարյուր նրբերշիկի արժեքի չափ դրամ էր ստացել և այժմ պարծենում էր: Իսկ փոքրիկ Քրիստինեն վշտից արտասվում էր: Նրան կողոպտել էին, խլել ամենանվիրական բանը՝ հեքիաթը, որը պետք է երջանկություն բերեր որբուկին:

...Մոտենում էին ծննդյան տոները: Ամե՛ն մանուկ հավատում էր, որ իր երազները կկատարվեն: Միայն Քրիստինեն ոչ մի սպասելիք չուներ: Կախարդական հեքիաթն այլևս իրեն չէր պատկանում:

... Ու մի օր էլ, նոր տարվա նախօրյակին, այն պահին, երբ երեկոյան ցուրտը մարդկանց դեպի տաքուկ անկյուններ է քշում, նրան մոտեցավ մի կառք: Դուռը բացվեց և ծանոթ, մտերմիկ աչքերը հրավիրեցին կառք նստել: Հետո իշխանական կառքը նրան տարավ զգեստներ վաճառող մի սալոն: Այնտեղ Քրիստինեին զուգեցին փոքրիկ լեդիի նման: Նոր զգեստներով նա այնպես գեղեցիկ էր, և այդ ամենը այնպես անսպասելի, որ քիչ մնաց խանությից դուրս գալիս մոռանար իր հին զգեստների կապոցը:



* * *

Ասում են, տարիներ անց, երբ այլևս չկար բարի ու ազնիվ Անդերսենը, նրա համեստ շիրմաքարին, ամեն օր, մի աներևույթ ձեռք չբացված շուշաններ էր շաղ տալիս...



Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

# ՀԵՔԻԱԹԻ ՆՄԱՆ

*ՍԱՂԱԹԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Երազիս մեջ ձյուն էր եկել,
Շատ էր եկել, ամպի չափ։
Ու ձյան միջից տեսնեմ մեկ էլ
Դուրս եկավ մի Ձմեռ պապ։

Եկավ կանգնեց քուրքը հագին,
Թավ հոնքերին փաթիլներ,
Գավազանն էլ մի ահագին
Գերան ասես թե լիներ։

Ճերմակ-ճերմակ մորուքն երկար
Իջնում, հասնում էր գոտուն,
Քիթը՝ կարմիր, ասես ներկած,
Աչքերը՝ մեղմ ու ժպտուն։

Շուրջը հսկա ծառեր կային,
Վրան՝ կոնֆետ ու շաքար.
Մի դղյակ կար հեքիաթային,
Ու մի կախարդ պառավ կար։

Պառավն եկավ ու ժպտալով
Ձեռքը դրեց իմ ուսին.
— Մի՛ վախեցիր,— ասաց,— Գալո՛,
Արի սահենք միասին։

Ու սահեցինք... Տղերք, իրոք,
Այնպես էի ես սահում,
Որ ձյունախառ քամին էր լոկ
Ականջներիս մեջ խաղում։

Դահուկներն էլ ոտքիս վրա
Ձմուշկ դարձան արծաթե,
Պտտվում եմ ոնց որ կրակ,
Ոնց որ փետուր մի թեթև։

Իսկ պառավը առած թևեր
Ասես օդով էր թռչում,
Մեկ իջնում էր, մեկ ելնում վեր
Ինչպես հսկա մի թռչուն։

Ձմեռ պապն էլ ծափ էր տալիս,
Հորդորում էր՝ «Ձեզ տեսնեմ...»
...Այստեղ հանկարծ միտս է գալիս,
Որ ես սղալ չգիտեմ։

Հենց հիշում եմ, քիչ է մնում
Գլխի վրա ընկնեմ ցած։
Բայց աչքերս բաց եմ անում
Ու մնում եմ զարմացած։

Ոչ ոք չկա.
Այդ բոլորը
Ես տեսել եմ երազում։
Արդեն կես է դարձել օրը,
Եվ արագ բակ եմ վազում։

Երբ պատմեցի հետո ես այս
Իմ երազը մեր բակում,

Բոլորն ասին.
— Ոչ թե երազ,
Այլ հեքիաթ ես տեսել դու։



Դ. ԷՐՎԻԼԻ　　　　Նկ. ԱՐՄԻՆԵ ԿԱԼԵՆՑԻ

Գլուխ հինգերորդ

## ԱՔՍՈՐԱԿԱՆԸ

Օրը մթնում էր։ Երկնքում լողում էին սև ամպերը։ Բարակ անձրև էր մաղում։ Առավոտից փչող սառը քամին դադարեց։ Անտառում լռություն տիրեց։ Վիթխարի կաղնիների և հացենիների տերևներն անգամ չէին շարժվում։

Անավոր ու մռայլ անտառում միայնակ քայլում էր հայրենի տնից աքսորված Կրեկը։

Ականջը պահած բնության անսպասելի արհավիրքներին, նա լուռ անցնում էր նեղ արահետով, ինքն էլ չիմանալով, թե ուր է գնում։ Հանկարծ անտառի լռությունը խախտվեց։ Կոնչաց բուն, ապա լսվեց ինչ-որ գազանի տխուր մլավոց, իսկ հետո՝ անհասկանալի մռնչոց։

Կրեկը ցնցված կանգ առավ, ուշադիր լսեց ու նորից շարունակեց անհայտ ճամփան։ Շալակին ուռենիների պաշարն էր, գոտկատեղին՝ սրածայր քարե դանակները, իսկ ձեռքին՝ կացինը։

Երբ անտառում լիակատար խավար տիրեց, արահետը կորավ, նա կանգ առավ հաստաբուն մի ծառի տակ և որոշեց գիշերելու պատրաստություն տեսնել։ Քարանձավի բնակիչները իզուր չէին նրան «թռչնորս» անվանում, կապկի ճարպկությամբ նա մի րոպեում մագլցեց ծառի կատարը։ Ճյուղերի մեջ հարմար տեղավորվելուց հետո սկսեց համեստ ընթրիքը։ Կրեկն ուտում էր և խորը կսկիծով հիշում փոքրիկ Օժոյին, որը երևի գլուխը մոր գոգին դրած, այժմ քնած էր տաք քարանձավում։

Շուտով Կրեկի քունն էլ տարավ։ Թե ինչքան ժամանակ անցավ, պատանին չգիտեր, բայց հանկարծ ականջին ինչ-որ խշխշոց հասավ։ Կրեկն իսկույն զգաստացավ։ Ձեռքում ամուր սեղմելով սուր կացինը՝ լարեց լսողությունը։ Խշխշոցը կրկնվեց։ Կրեկը գլխի ընկավ, որ ծառի վրա ինքը մենակ չէ։ Բայց սկզբում չկարողացավ որոշել, թե ինչպես վարվի։ Եթե ծառից ցած իջներ՝ թշնամին կարող էր հետապնդել, իսկ եթե ավելի վեր բարձրանար... սակայն վեր մագլցելը նույնպես վտանգավոր էր։ Ամենից հարմարը առայժմ ճյուղի վրա մնալն էր և կռվի պատրաստվելը։ Իսկ մենամարտն անպայման պիտի լիներ։ Այդպես էր թելադրում որսորդի բնազդը։

Խշխշոցը կրկին լսվեց։ Եվ Կրեկը չոր ճյուղերի արանքներից երկարավուն մի ստվեր նկատեց։ Տղան ցատկեց մյուս ճյուղի վրա։ Երկարավուն ստվերը հետևեց նրան։ Այստեղ միայն Կրեկի սուր աչքերը խավարի մեջ տեսան ահարկու թշնամուն՝ երկար պոչով հսկա հովազին։ Գազանը առջևի թաթերով ամուր բռնել էր ճյուղից և ճոճվում էր։ Սակայն Կրեկը իրեն չկորցրեց։ Նա բարձրացրեց կացինը և ամբողջ ուժով հարվածեց գազանի գլխին։ Վիրավոր կենդանին կատաղի մռնչաց։ Ոգևորված առաջին հաջող հարվածից, Կրեկը նորից իջեցրեց կացինը, բայց այս անգամ կպավ նրա կողին։ Գազանը ցատկեց մի ուրիշ ավելի բարակ ճյուղի վրա։

Ծառի վրա ժամանակավոր լռություն տիրեց։ Ապա լսվեց վիրավոր գազանի շնչակտուր խռոխռոցը։ Կրեկը համոզված էր, որ հովազը ծանր վիրավոր է և գտնվում է իրենից ավելի ցածր ճյուղի վրա։ Այժմ արդեն կարելի էր վեր մագլցել։ Հազիվ էր նա մի քիչ բարձրացել, երբ նորից խշխշոց լսեց։ Փոքրիկ որսորդի սիրտը նորից տագնապ տիրեց։

Այսպես անցավ բավական երկար ժամանակ։ Հանկարծ Կրեկի գլխավերևում խռխռոց լսվեց, և հովազի հսկայական մարմինը ընկավ նրա վրա։ Պատանին ճարպիկ շարժումով խույս տվեց, բայց գազանը սուր մագիլները մխրճեց նրա ձախ բազուկի մեջ։ Կրեկը ազատ ձեռքով բարձրացրեց ծանր կացինը և կտրեց հովազի թաթը։ Հարվածը թափով էր, և պատանին չկարողացավ այլևս կացինը ձեռքում պահել ու ցած գցեց։ Կացնի հետ միասին ճյուղերը ջարդուփշուր անելով գետին տապալվեց նաև հավասարակշռությունը կորցրած մահամերձ գազանը։

Երկարատև պայքարից և այրվածքներից հոգնած Կրեկը մի կերպ մագլցելով հասավ ամենաբարձր

Սկիզբը՝ «Պիոներ» №№ 8, 9, 10

ճյուղին։ Շուտով նրա քունը տարավ և նա քնեց։ Երբ արթնացավ, լույսը վաղուց բացվել էր։ Երկնքում երեկվա նման գորշ ամպերն էին լողում։ Շարունակվում էր բարակ անձրև մաղել։

Կրեկը զգուշորեն կռացավ և ճյուղերի արանքից ցած նայեց։ Ներքևում ընկած էր նրա գիշերային թշնամին։ Նա ուշադիր հետազոտեց շրջապատը և ծառից ցած իջավ։

Առաջին հերթին փնտրեց ու գտավ կորցրած կացինը, ապա մոտեցավ սպանված հովազին։ Կրեկը հիացած էր, որովհետև գազանը ոչ միայն վիթխարի էր, այլև գեղեցիկ։ Այդպիսի հովազի հետ մարտնչելը ամենափորձված որսորդի համար և՛ վտանգավոր էր, և՛ նախանձելի։

Կրեկը ուրախությունից սկսեց գազանի շուրջը գոռգոռալ, թռչկոտել և պարել։ Հաղթական բացականչության ժամանակ հանկարծ նրան ինչ-որ տեղից երեք անգամ բարձրաձայն պատասխանեցին։ Զարմանքից տղան կանգ առավ, բայց շրջապատում ոչ ոք չկար։ Բայց քիչ հետո նորից լսվեց տարօրինակ ձայնը։ Կրեկը ուշադիր նայեց չորս կողմը։ Մի քանի րոպե անց լսվեցին մարդկային ոտնաձայներ, և երկու զինված պատանիներ կանգնեցին նրա դեմ-դիմաց։

— Եղբայր... Կրե՜կ...— գոչեցին նրանք։

Շփոթված պատանին կացինը ձեռքից բաց թողեց։

— Գել, Ռյուգ... սիրելի եղբայրներ,— շշնջաց նա։

— Մենք որոշեցինք քեզ գտնել և երբեք մենակ չթողնել... Տոհմավագը նույնպես...

— Տոհմավա՞գը,— հարցրեց Կրեկը։

— Այո, նա ինքը,— հանկարծ լսվեց Կրեկին հարազատ Տոհմավագի ձայնը։

Կրեկից մի քանի քայլ հեռու, գայլի մորթին ուսերին՝ կանգնած էր ծերունին։

Պատանի աքսորականը վաղուց գիտեր, որ եթե Տոհմավագը գայլի մորթի է հագնում, ուրեմն մտադրվել է հեռավոր ճանապարհորդություն կատարել։ Ծերունին մինչև ատամները զինված էր և ձեռքին էր առել հյուսիսային եղջերուի կոտոշներից պատրաստված շքեղ գավազանը։

Կրեկը ծնկի իջավ.

— Տոհմավագ, դու չլքեցիր ինձ... շնորհակալություն։

— Կրեկ, զավակս, ես ընդմիշտ հեռացա քարանձավից և որոշեցի մինչև կյանքիս վերջը բախտս կապել քո և եղբայրներիդ հետ... բայց ինչ եմ տեսնում այստեղ,— ընդհատելով խոսքը, ծերունին մատնացույց արեց ջախջախված հովազին,— մի՞թե ինքդ ես սպանել։

Կրեկն առանց ավելորդաբանությունների և չափազանցության, մանրամասն պատմեց գիշերվա արկածները։ Մինչև նա կվերջացներ իր հետաքրքիր պատմությունը, Գելը ճանապարհորդա-



կան պարկից հանեց համեղ ուտելիքները։ Սկսվեց նախաճաշը։ Իսկ երբ վերջացրին, ծերունին դարձավ Կրեկին.

— Այլևս թռչունների նման ծառերի ճյուղերին չես թառի, իսկ այսօր ընթրիքին կուտես խորոված միս։ Ես հետս վերցրեցի Ցո-օտարականի փայտիկները։ Քարանձավի մարդիկ կրակով պաշտպանված են։ Մենք ամեն իրիկուն կրակ կվառենք և նրա բոցերի պաշտպանության տակ հանգիստ կքնենք։

Այսպես սկսվեց չորս բարեկամների առաջին օրը, որն անցավ առանց պատահարների և արկածների։

Վեցերորդ գլուխ

## ԳԱՂՏՆԻՔՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Օրերն անցնում էին իրար ետևից. մերթ ամպամած, մերթ անձրևոտ, մերթ փոթորկոտ։

Ծերունի Տոհմավագը թոռների գլուխն անցած՝ կտրում էր լեռները, դաշտերն ու անտառները և գնում դեպի հազվադեպ երևացող արեգակի ուղղությամբ։

Տանջալից ու հոգնաբեկ ճանապարհորդության ընթացքում Կրեկը Տոհմավագից և եղբայրներից ամեն օր մի նոր բան էր սովորում։ Նա հիանալի տարբերում էր անտառի ձայները, անհասկանալի սուլոցները, մռնչոցները, աղաղակներն ու երգերը... մի խոսքով, հասկանում բնության բարդ ու անուշ լեզուն։

Ազատ բնությունը դարձել էր նրա համար իսկական դպրոց, իսկ ամենօրյա քաղցը, զրկանքները և իմաստուն ծերունու խորհուրդները՝ ուսուցիչներ։ Նա մանրամասն ուսումնասիրում էր բոլոր խորամանկությունները ու հնարքները, որոնք հարկավոր էին որսորդության և ձկնորսության ժամանակ։ Եվ չնայած տարիքով եղբայրներից փոքր էր, բայց վազում, թռչում, փորսող տալիս և ջրում սուզվում էր առավել հմտորեն, քան նրանք։

Կրեկը երբեք չէր մտածում, չէր սիրում գլուխը գովել, ընդհակառակը՝ միշտ պատրաստ էր սովորել և ուշադիր ականջ դնել իրենից մեծերին։ Նա հաճախ տեսնում և զգում էր ծերունի Տոհմավագի սխալները, բայց երբեք բարձրաձայն չէր հակաճառում և չէր դադարում նրան հարգել կամ ենթարկվել։

Մոտենում էր դաժան ձմեռը։ Մոտենում էին ցրտերը, իսկ ապրելու տեղ նրանք դեռ չէին գտել։ Բայց ահա ճակատագիրը ժպտաց նրանց։ Մի անգամ թռչուններին հետապնդելիս Ույուգը սարալանջին նկատեց թփերի տակ քողարկված մի մեծ անցք։ «Երևի այստեղ նախկինում մարդիկ են ապրել,- մտածեց նա և հետո իսկույն եզրակացրեց.— իսկ ինչո՞ւ այժմ մենք չենք կարող պատսպարվել»։ Ույուգը խնամքով մաքրեց անցքի մուտքի առջև գոյացած աղբի կույտը և ներս նայեց։ Ոչինչ չէր երևում։ Զգուշորեն ներս մտավ։ Հենց այդ ժամանակ քարանձավի խորքից հանկարծ լսվեցին տարօրինակ ձայներ, իսկ մի քանի վայրկյան հետո քարայրից դուրս թռավ արյունաշաղախ Ույուգը՝ ջարդված մահակը ձեռքին և շնչակտուր փախավ դեպի յուրայինները։

— Ի՞նչ է պատահել, ինչո՞ւ ես արնաշաղախ, — զարմացավ ծերունին։

Մարդիկ... այնտեղ մարդիկ կան... ինձ վրա հարձակվեցին,-- կմկմաց վախեցած տղան։

— Մարդի՞կ... ո՞րտեղ...

— Քարանձավում. նրանք ուզում էին ինձ սպանել, բայց ես մարտնչեցի... իսկ երբ զենքերս ջարդվեցին, գլուխս հազիվ փրկեցի։

(Շարունակելի)




ԳԱՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

ենք ապրում ենք գյուղի ծայրին: Հսկա անտառը քսվելով մեր ցանկապատին, գնում փռվում է Թեղենիսի լանջերին: Մեր բակից ամբողջ գյուղը երևում է, մանավանդ չորսհարկանի տուֆակերտ դպրոցը, որ վարդի պես բացվել է գյուղի կենտրոնում:

Դպրոցի շենքը մեր տանից հեռու է, իսկ ֆուտբոլի դաշտը հենց մեր տան կողքին է, անտառի բացատում: Մեր գյուղում ֆուտբոլի դաշտեր էլի կան: Իսկ այդ մեկը մեր թաղինն է, մենք ենք սարքել: Ճիշտ է, իսկականի պես մեծ չէ, և դարպասներն էլ ցանցեր չունեն, մեծ-մեծ քարեր ենք դրել. գնդակը դրանց արանքով անցնում է թե չէ, ուրեմն գոլ է:



Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Բայց մեր դաշտը միայն ֆուտբոլի համար չէ: Ամռան ամիսներին ինչ խաղ ասես, որ չենք խաղում այնտեղ: Դեռ մեկ-մեկ էլ երեխաներով հավաքվում, աքլոր կամ շուն ենք կռվեցնում:

Մեր թաղում երեխաներ շատ կան, համարյա ամեն տանը 5—6-ը: Բայց շները մյուս թաղերի համեմատությամբ քիչ են:

Իհարկե, լավ կլիներ, որ թաղում շներ շատ լինեին: Ախր մեր գյուղը անտառի մեջ է, իսկ անտառում է՛լ գայլ, է՛լ արջ, է՛լ աղվես: Ես նույնպես շուտով շուն կունենամ: Մեր թիմի կենտրոնական հարձակվող Հրաչիկը խոստացել է իր շան ձագերից մեկը ինձ տալ: Երբ ասում եմ մեր թիմից, չիմանաք, թե մեր թաղը միայն մեկ թիմ ունի, ի՛նչ մեկ, երկուսն են: Մեկի ավագը մեր դասարանի Մարտունն է, մյուսինը՝ Գարիկը: Բոլորը՝ ենթարկվում են Հրաչիկին: Նա էլ մեր դասարանից է, բայց երկու մեր բոյին է: Նա թեև սովորելու մեջ աչքի չի ընկնում և երկու տարի մնացել է նույն դասարանում, բայց բոլորից ուժեղ է:

Ես Գարիկի թիմից եմ: Սկզբում հարձակվող էի, բայց հետո Գարիկն ասաց՝ «Կրակել չգիտես» և ինձ դարձրեց դարպասապահ: Ես, իհարկե, վազելն ավելի էի սիրում, քան պպզելն ու կանգնելը, բայց, ինչ արած, Գարիկի ասածն ասած էր: Դեռ դա ոչինչ, հիմա էլ ասում է. «Գնդակներ շատ ես ուտում»: Ի՞նչ ուտել, հետո չունի և վերջ: Ձունի, որովհետև ես նրա շանը չեմ գովում: Դե, ինչ գովեմ, երբ գովելու բան չի: Իսկ նա, թե՝ քանի որ դու իմ թիմից ես, ուրեմն ինձ պիտի պաշտպանես: Իմ շունը որ հաչել էլ չիմանա, դու պիտի ասես՝ Գարիկի շունը աշխարհում ամենից լավն է: Է, ես ինչո՞ւ պիտի սուտ ասեմ:

Մի օր տանից դուրս եկա և ինչ՝ տեսա Գարիկը ամբողջ թաղի երեխաներին գլխին հավաքած՝ փողոցում տաք-տաք վիճում է: Մոտեցա: Մեջտեղում ինքն ու Մարտունն էին: Մեկ սա էր իր շանը գովում, մեկ՝ նա: Հավաքվածների մի մասը Գարիկի կողմից էր, մյուսը՝ Մարտունի: Եվ երկու կողմից այնպես էին վրա տալիս, այնպես գոռգոռում, որ իսկի չէիր իմանում, թե խոսքը ո՛ր շան մասին է:

— Մի շուն էլ լինի՜...

— Ոնց որ կատու...

— Ի՞նչ կատու՝ մո՛ւկ...

Ես նույնպես խառնվեցի հավաքվածներին և սկսեցի ձայնակցել Մարտունի կողմնակիցներին:

Վեճը գնալով տաքանում էր:

— Ի՞նչ եք աղմկում,— հանկարծ ձայն տվեց Հրաչիկը, որն աննկատելիորեն մոտեցել էր խմբին ու լսում էր վիճաբանությունը,— շները կռվեցրեք և վե՛րջ:

— Ճիշտ որ,— ասացին այս ու այն կողմից,— շնե՛րը կռվեցրեք, շնե՛րը:

— Դե, շարժվեք, էլ ո՞ւր եք սպասում,— ասաց Հրաչիկը:

Այս խոսքերի վրա խմբից իսկույն անջատվեցին Մարտունն ու Գարիկը և վազեցին դեպի տուն: Քիչ հետո նրանք կապերից բռնած փողոց դուրս բերեցին շներին: Մարտունի շունը, որին Ձալո էին կանչում, մոխրագույն էր, բրդոտ, իսկ Գարիկինը՝ Ձամբարը, սև էր, պսպղուն աչքերով, բայց մի տեսակ քնձռոտ: Երկուսն էլ նույն տարիքի էին: Փոքր ժամանակ խաղում

էին իրար հետ, գտած ոսկորը միասին կրծում, միասին հաչում անծանոթ անցորդի վրա: Իսկ հետո նրանց վզին կապ դրին, և նրանք այլևս չհանդիպեցին իրար:

Հիմա թեթև գոռոցով լեզուները դուրս գցած, նրանք տերերից առաջ էին ընկնում, ուրախ էին, որ բնից ազատվել են: Միայն կապերը նրանց դուր չէին գալիս. հաճախ նախ էին ընկնում, քաշում դեպի ետ, կլղլանձում, գլուխները պտտում, որ, ինչ է, կապից ազատվեն, իրենց քեֆին վազվզեն: Նրանք ի՞նչ իմանային, որ կռիվ են գնալու:

Երբ Մարտունն ու Գարիկը շների հետ մոտեցան հավաքվածներին, Հրաչիկը ձայն տվեց.

— Դե՛, շարժվեցինք:

Եվ խումբը տեղահան եղավ: Բոլորն էլ գիտեին, որ սպորտի այդ ձևը առանձին հրապարակ չունի և միակ հարմար տեղը ֆուտբոլի դաշտն է, և ուղևորվեցին այնտեղ:

Օրը կիրակի էր: Ամռան պայծառ արևը բոլորին տանից դուրս էր բերել: Երեխաների բազմությունը թարմ ձյան մեջ գլորվող ձնագնդու պես գնալով մեծանում էր: Գալիս միանում էին նույնիսկ մյուս թաղերից:

Ճանապարհին արդեն որոշակիորեն նկատելի էր, թե ով ում կողմից է: Առջևից գընում էր Հրաչիկը, նրանից հետո Գարիկը՝ իր շան, ֆուտբոլի թիմի և մյուս կողմնակիցների հետ: Վերջում մենք էինք, այսինքն՝ Մարտունը և իր կողմնակիցները: Մենք ավելի քիչ էինք: Չգիտեմ ինչու, Մարտունին մի քանիսը չէին սիրում, դե, գերազանցիկ էր, երևի նախանձում էին: Ամբողջ ճանապարհին խմբերը գոռգոռում էին, ոգևորում շնատերերին:

— Քո շունն ուրիշ է,— լսվում էր առջևից,— մի տես ինչպե՛ս է գռռում:

— Շուն հո չի, առյո՛ւծ է, առյո՛ւծ,— լըսվում էր վերջից...

— Քոնը՛ կհաղթի, քո՛նը...

Հետո դառնում էին դեպի շները:

— Չալո ջան, տե՛ս, հա՛, որ մորթին չես գզգզել...



— Քեզ տեսնենք, Չամբա՛ր, բուրդը քամուն կըտաս, հա՛...

Ասում էին, խոսում և մեկ-մեկ էլ կռանում ու շոյում շներին:

Երբ տեղ հասանք, մի խումբ մոտեցավ հյուսիսային դարպասին, մյուսը՝ հարավային: Հրաչիկը ինքնակոչ դատավորի պես կանգնեց դաշտի կենտրոնում և ձեռքով հասկացրեց, որ խմբերը մի քիչ մոտենան իրար: Երբ արդեն ահագին մոտեցել էին, առաջինը Գարիկը գոռաց.

— Հը՛, ի՞նչ ես ցցվել, շղթկիդ բաց թող տեսնենք:

— Դու քոնին նայիր, քոնին,— պատասխանեց Մարտունը,— ականջներն այնպես է կախել, ոնց որ սատկած լինի:

Շները լեզուները դուրս գցած՝ պպզել էին գետնին ու մերթ մի խմբին էին նայում, մերթ՝ մյուս: Երբեմն էլ, ասես, ձայնակցելով տերերին, մի երկու բերան հենց այնպես հաչում էին, բայց թե ո՞ւմ վրա, հայտնի չէր: Իսկ խմբերը դեռ շարունակում էին վիճել: Բանն այնտեղ հասավ, որ շները քարշ տալով, Մարտունն ու Գարիկը տաքացած մոտեցան իրար:

— Ո՞ւմ շանն ես սատկած ասում, հը՞,— ասաց Մարտունը:

— Դե ինքդ նայիր է՛լի,— հռհռաց Գարիկը,— այնպես է քարացել, ոնց որ փայտ կուլ տված լինի: Իմ շունը կհաղթի, ա՛յ, կտեսնես:

— Քեզ նման մի սատկած «երեք» կարող է ստանալ,— վրա տվեց Մարտունը:

Այս խոսքի վրա ամբողջ դաշտը փոթկաց: Գարիկը այդ բանին չէր սպասում: Նա ուղղակի կատաղած վրա պրծավ, և գուցե ծեծկըռտոց սկսվեր, եթե խմբերից վազեվազ չըհասնեին:

— Ա՛յ տղա, շների փոխարեն ինքնե՞րդ եք կռվում,— ասացին այս ու այն կողմից և նրանց բաժանեցին:

Երբ արդեն ամեն մեկն իր տեղում էր, Հրաչիկը ձայն տվեց.

— Դե, սկսում ենք, շների վզից կապերն հանե՛ք:

## ՁՄԵՌՆԱՄՈՒՏ

ՖԵՆՅԱ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

*Մռայլվում են կամաց-կամաց*
*Սարերն աշնան մութով,*
*Մեղմ է շնչում օրն ամպամած.*
*Ձյուն է գալու շուտով:*

*Ջորն է իջնում մուժը սարի,*
*Հոսանք բերում մի պաղ,*
*Ծանրանում է խոհն անտառի*
*Լռության մեջ խաղաղ:*

*Կաթկթում են դեղնած խոտին*
*Հաղարջները սառած,*
*Դողդողում է բարակ բարդին՝*
*Ձմռան լուրը առած:*

*Կռունկների երամի հետ*
*Տաք օրերը թռան,*
*Երգ է ասում քամին անհոգ*
*Ականջի տակ լեռան:*

*Մռայլվում են կամաց-կամաց*
*Սարերն աշնան մութով,*
*Մեղմ է շնչում օրն ամպամած.*
*Ձյուն է գալու շուտով:*

Նկ. ԲԱԳՐԱՏ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ

Կապերն հանեցին: Հրաչիկը սուլիչը տարավ դեպի բերանը: Սուլիչի ձայնի հետ սկսվեց մի կատաղի գոռում-գոչյուն: Մի կողմից ճչում են.

— Չալո, հասի՛ր, Չալո, բռնի՛ր...

Մյուս կողմից.

— Չամբար, հասի՛ր: Չամբար...

Հետո նորից.

— Քը՛ս, քը՛ս, քը՛ս...

— Քը՛ս, քը՛ս, քը՛ս...

Շները աղմուկ-աղաղակից խրտնած՝ թափով պոկվեցին տեղից և հաչելով արագ մոտեցան իրար:

— Ո՜ւխ, հիմա կգզի...

— Ջա՜ն, մի տես ո՜նց է թռչում...

— Արյունլվիկ կանի...

Բայց ահա՛ թե ինչ: Չալոն ու Չամբարը մոտեցան իրար և... կանգ առան: Նրանք պոչները շարժելով, ականջները խաղացնելով մի պահ նայեցին իրար, հոտոտեցին և ապա... ուղղակի սկսեցին իրար լիզել, համբուրել...

Իսկ հետո... հետո թեքվեցին դեպի հավաքվածները և սկսեցին հաչել նրանց վրա, կարծես ուզում էին ասել, «Տեսա՞ք մեր կռիվը»:

Դաշտի գլխին ասես տաք ջուր մաղվեց: Խմբերը միանգամից պապանձվեցին: Նրանք ապշած նայում էին իրար ու չէին հավատում տեսածներին: Իսկ հետո, երբ լրիվ համոզվեցին, որ շները կռվելու ոչ մի տրամադրություն չունեն, միանգամից փռները բռնեցին և սկսեցին ծիծաղել: Այդ ծաղր ու ծանակի տակ Մարտունն ու Գարիկը բռնեցին շներին, նորից կապեցին ու քարշ տվեցին դեպի տուն.

# ԱՆՏԱՌԻ ՄԱՐԴԸ

Ֆանտաստիկական պատմվածք

ԱՐՏԱՎԱԶԴ ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

— Տե՛ս, Անդրո,— ասաց մեծը,— առափնյա խութերը վերջացան: Հիմա մենք լաստը կմղենք դեպի այն գետախորշը և մի քիչ կհանգստանանք արմավենիների տակ:

— Դրանք արմավենի չեն, Մուքել,— ասաց տղան:

— Դու, ինչ է, Անդրո,— հակաճառեց մեծը,— չե՞ս տեսնում թափվող մագմզուկները:

— Ուրիշ ծառեր էլ կան, որ մագմզուկներ ունեն. ինձ չես կարող խաբել, Մուքել,— խորամանկ ժպտաց տղան:

-- Անդրո,— նեղսրտեց նա,— տե՛ս, թե որքան բոսորագույն են:

Օդում շրջորում էին բազում մազաթելեր, որ ամռան հովն էր բերում լեռնալանջի անտառից: Տղան կանգնեց լաստի մեջ և ղեկը բռնեց:

Լաստը խփվեց գետից ցցված ժայռակտորին: Տղան ընկավ ուռենու թաց պարաններին: Մուքելը մի ակնթարթում երկարուկ թիակները խրեց հանդարտ հոսող ջուրը:

— Այստեղ ծանծաղ է,— ասաց,— ինչ խոսք՝ վըտանգավոր է: Այժմ, տղաս, թեքիր ղեկը և հենվիր թիակին:

Ափ ելան: Լաստը կապեցին մացառներին, իջեցրին պայուսակները, հրացանն ու խփված փասյանները:

Տղան շտապեց փայտ ժողովել և կրակ արեց: Մուքելը շամփուրներ պատրաստեց:

— Պետք է զգույշ լինել,— ասաց մեծը,— այստեղ և՛ իժեր են լինում, և՛ հովազ է պատահում: Իսկ երկրաբանները նախամարդու ոտնահետքեր են տեսել...

Շուտով հանգավ արևը: Փռվեց կապտավուն երեկոն: Կիսալուսինը սահեց բարձր արմավենիների կատարով:

Մուքելը մեկնվեց կանաչ խոտերին ու անմիջապես քնեց: Տղան մեջքի վրա պառկած դեռ դիտում էր հեռավոր աստղերը: Ցածից լսվում էր գետի մեղմ վըշշոցը, դաշտամկան և մամուխի թփուտներում մի գլուխ ճռռում էր ծղրիդը:

Գլխավերևում ոտքերի տակ ընկնող ցախի ճրթճըրթոց լսվեց: Հսկա մի ստվեր ձգվեց գետնին: Տղան շուռ եկավ: Նա ծառերի մեջ նկատեց բարձրահասակ, մերկ, մարմնեղ ու թավամազ մի մարդու: Դա բոլորովին անսպասելի էր: Տղան և այդ հսկամարդը ուշադիր իրար նայեցին մի քանի րոպե: Հետո մարդը շրջվեց ու դանդաղ հեռացավ:

Տղան վախեցած հառաչեց, ճանկեց Մուքելի ուսը և ցնցեց:

Մարմանդ բացվեց այգը: Արևի ճառագայթները շեղակի ընկան բազկատարած ճյուղերի պրանքներից: Անտառը լցվեց անհամար, բազմերանգ բզեզներով:

Մուքելը և տղան խոնավ հողի վրա տեսան հսկամարդու ոտնահետքերը:

— Մի ա՛յս կողմ եկ, Անդրո,— որոտաց մեծը,— քո տեսած հսկամարդը վայրենի է,— և հեգնեց,— խըռովել ենք նրա անդորրը:

— Մեր գլխին մի փորձանք կբերի:

— Հապա զենքը, տղա՛, խելքն ու հնարամտությո՞ւնը:

— Բայց նա ուժեղ է:

— Այդ դեռ կերևա:

Մուքելը և տղան խորացան մարդաբոյ խոտերի և անանցանելի թփուտների միջով դեպի անտառածածկ լեռնապարը: Նրանք կացնով կտրտում էին վայրի խաղողի, ոլորաբույսերի ու պատատուկների ճյուղերը, սաղարթները և ճանապարհ էին բացում: Նրանց ոտքերի տակից թռչում էին ձվերին նստած գորշագեղ մայր հավերը:

Տերևների խշրտոց լսվեց: Մի հաստաբուն ծառ կոտըրվել, ընկել էր գետնին. նրա վրայով՝ թանձր ստվերի մեջ, կամացուկ առաջ էր սողում սևաբոց, շիկակարմիր-դեղին ընձառյուծը: Մուքելը շտապեց քաշել հրացանի փականակը: Վտանգն, ասես, զգալով, նույն ակնթարթին ընձառյուծը ցատկեց: Հրացանը որոտաց, և ընձառյուծը գետնին տարածվեց, կատաղի մռնչյունով:

— Ռախկ... ռ ա ա՛ խ կ...

Տղան բաճկոնն անմիջապես նետեց ընձառյուծի գլխին: Մուքելը կացնով խփեց:

Հազիվ էին շտկել մեջքները, երբ Մուքելն ու տըղան իրենցից մի քանի քայլ այն կողմ արևի լույսով տեսան ամբողջ հասակով մեկ թփերի մեջ կանգնած հսկամարդուն, որը նրանց դեռ չէր տեսել և լայն ու տափակ քթածակերով հոտոտում էր օդը: Դա մի ցընցող ու զարհուրելի տեսարան էր: Վայրենի մարդը կանգնել էր հպարտ, կուրծքը մի քիչ ներս ընկած, մազախռիվ, ծնոտը կախ, ատամները բաց և զայրացկոտ: Ճակատը նեղ էր, քիթը՝ կարճ: Մանր աչքերն ունեին մթավուն և կանաչ գույն: Իսկ հայացքը թավ հոնքերի տակ երևում էր խիստ ու դաժան: Ջլապինդ դաստակները հասնում էին մինչև ծնկները:

Մարդկանց նոր նկատեց: Հալացքը խոժոռվեց: Բայց մի տեսակ անդրդվելի ու վճռական կանգնած մնաց: Մուքելը և տղան մի արտակարգ քաջությամբ նույնպես մնացին դիմացը մեխված, թափանցելով աչքերի մեջ, երկմտելով ու խորհելով: Ոչ մեկը չնահանջեց: Ի վերջո, հսկամարդը կտրուկ ետ դարձավ ու հեռացավ՝ փշրելով ծառի ընձյուղները:

— Դուր չեկանք,— հոգոց հանեց տղան,— պարզ է՝ ոտնահարում ենք նրա հողը, տիրանում որսին: Ամեն կերպ դեմ ենք,— քմծիծաղեց.

— Իսկ ինձ, տղաս,— բողոքեց մեծը,— ամենևին դուր չեկավ նրա մռութը:



Հանկարծ ճայթեց ամպրոպը. Տեղաց տաք ու հորդ անձրև: Սակայն դեռ բարկ ու կծող արև կար, որ անտառը լցրեց բազմերանգ գույներով: Բարալիկ մի օձ կախվեց լայն տերևների արանքից, ընկավ ուղիղ նրանց ոտքերի մոտ, ֆշշաց և խոտերը տրորելով կորավ թփուտներում: Տարածվեցին բնից փախչող հավքերի ճռվողյունը: Այդ տևեց ընդամենը մի քանի՜ պահ: Անձրևը դադարեց: Հողից ու ծառերից սկսեց բարձրանալ խիտ, թափանցիկ գոլորշին:

Նրանք նորից տեսան հսկամարդու ոտնահետքերը: Մուքելը քայլում էր առջևից՝ ուսին տանելով ընձառյուծի թանկարժեք մորթին

— Անդրո,— ծոր տվեց Մուքելը,— մի տե՛ս:

Տղան դուրս եկավ թփերի միջից և առջևում տեսավ քարուքանդ արած իրենց կացարանը: Այդ հսկամարդու ձեռքի գործն էր: Պատռոտել ու ծառերի տակ ցրել էր պայուսակները, քնապարկերը, կերել ճարպն ու հացը, ոտքերով քանդրտել օջախը: Դա կույր վրեժ էր:

Գետափից փնթփնթոց եկավ: Մուքելը վատ բան նախազգաց: Առաջ նետվեց: Տղան հետևեց նրան: Հըսկամարդը ձեռքերով ու ոտքերով չարչարվում էր լաստը պոկել կապած տեղից և հրել գետը: Այդ արդեն ծայրահեղ էր.. Մուքելը երկլուղից կրակեց: Հսկամարդն անակնկալի եկած բռռաց, կատաղած շուռ եկավ, տեսավ զառիթափին կանգնած մարդկանց: Մուգ ալ, սևաթույր արյունը ներկեց ուսը: Նա կռացավ. գետափից պոկեց մի ահռելի քար ու գլխից վեր պահած մռնչալով առաջացավ: Ճողոպրեց երկրորդ գնդակը: Հսկամարդը մի ակնթարթ երերաց ու քարը նետեց ոտքերի տակ: Մուքելն ու տղան առանց հապաղելու գետափով վազեցին ցած, մտան եղեգնուտի մեջ և նետվեցին ջուրը: Գետը նրանց կլանեց: Առաջինը մեծը ճեղքեց հոսանքը՝ մի ձեռքով բարձր պահած հրացանը: Տղան լողաց նրա ետևից: Հսկայական գետը փռվել էր ափիցափ, Մուքելը կարողացավ մի կերպ ցամաք ելնել: Նա անմիջապես հրացանը լցրեց և ըսպասեց պատրաստ, որպեսզի տղան նույնպես անվտանգ անցնի գետը: Իսկ տղան հոգնել էր արդեն: Վախը կաշկանդել էր թևերն ու ոտքերը: Գետի մյուս ափին հայտնվեց նաև հսկամարդը: Նա բոռում էր, բռունցքներով հարվածում օդը, կուրծքը ծեծում: Մուքելը կրակեց, բայց վրիպեց: Տղան բոլորովին շփոթվեց: Ափը դեռ հեռու էր, իսկ նա ուժասպառվել էր: Սկսեց խեղդվել և օգնություն կանչել: Մուքելը սրտի ցավով էր տեսնում այդ՝ չիմանալով նորից մտնե՞լ ջուրը, թե դեռ սպասել. Հսկամարդուն գրավեց այդ տեսարանը: Նա խաղաղվեց ու այս անգամ ինչ-որ խուպոտ ձայներ արձակեց: Մուքելը և նա գետի երկու կողմերից միաժամանակ՝ մտան ջուրը: Մուքելը հապաղեց, իսկ հսկամարդը շարունակեց: Խորացավ հսկա քայլերով և ձեռքը գըցեց արդեն ուշագնաց տղային, բարձրացրեց: Մուքելը չկրակեց, բայց հրացանը առաջ մեկնած սրտատրոփ սպասեց, թե ինչ է լինելու հետո: Հսկամարդը դուրս եկավ ափ: Մուքելը ետ-ետ գնաց՝ սևեռուն հետևելով նրա ամեն մի շարժմանը. Հսկամարդը տղային դրեց գետափի տաք ավազին, շտկվեց և երկար դիտեց: Նրա ուսից և կրծքից դեռ արյուն էր հոսում: Բայց նա ուշադրություն չէր դարձնում դրան: Դեմքը մռայլ էր: Մուքելը կարկամած մնացել էր կանգնած՝ հրացանը ձեռքին. որևէ բան անելու անկարող: Վայրենի մարդն այդ պահին նրան երևում էր, վեհ, բարի, գեղեցիկ և ուժեղ



# ՍԱԳԵՐԸ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

ԼԵՈՆԻԴ ՀՈՒՐՈՒՆՑ

Ամեն տարի միևնույն ժամանակ, ես նույնիսկ հաստատ գիտեմ, թե երբ, մեր քաղաքի վրայով իրենց սովորական երթուղիով չվում են թռչունները։

Հենց որ ականջիս է հասնում նրանց առաջին ձայնը, ես անմիջապես վազում եմ մոտակա պուրակը։

Հարևանները չեն հասկանում, թե ինչու և ուր եմ թռչում այդպես գլուխս կորցրած։ Նույնիսկ տնեցիները զարմանքով ենթայում իմ պատրաստակամությունների ու ինձ վրա։ Պուրակում թռչունների չուին հետևելը ինձ համար կատարյալ երջանկություն է։

Լսու՞մ եք... Երկնի կապույտում լսվում են նրանց երգի արծաթե հնչյունները։ Խլացնել այդ երգը ի վիճակի չեն նույնիսկ քաղաքի աղմուկն ու ժխորը։ Իսկ այնտեղ, տեսնու՞մ եք, կենդանի, շարժուն եռանկյունին... Ահա և մեկ ուրիշը։ Դրանք կռունկներ են։

Կարապները շատ բարձր են թռչում։ Քաղաքի վրայից թռչելիս նրանք ավելի են վեր խոյանում։ Հազիվ ես հասցնում պատառոտված ամպերի արանքից տեսնել թռիչքի բեկբեկուն գիծը, նրանց ոսկեփայլ փետուրները։ Եվս մեկ վայրկյան, և նրանք կանհայտանան ամպերի հետևում։

Սագերը բոլորից ցածր են թռչում։ Ես տեսնում եմ նրանց երկար, սեղմված կտուցները, որոնք տափակ սփիններ. [illegible] հիշեցնում, լսում նրանց մարտահրավեր կանչերը ու հիշում եմ իմ երջանիկ մանկությունը։

Մեր բակը փոքր էր, նեղ, բայց պապս, որ ոչ մի բանում չէր ուզում զիջել ունևոր հարևաններին, բակը շրջափակեց բարձր պարիսպներով։

Պապս միշտ ուզում էր, որ մենք ունենայինք այն ամենը, ինչ բոլորը ունեն, և այդ պատճառով էլ մեր բակում ինչ կենդանիներ ասես, որ չկային. էլ հավեր, էլ սագեր ու բադիկներ, նույնիսկ ուռած-փքված խայտահավեր՝ շքեղ կարմիր կատարներով, որոնց միշտ նմանեցրել եմ արքայական թագի...

Հարկավոր էր տեսնել թևավորների այդ խայտաբղետ ամբոխը այն պահին, երբ մեր գյուղի վրայով, անհասանելի բարձրությունից անցնում էին չվող թռչունները...

Հավերի կչկչոցի ձայնը հասնում էր գյուղի մյուս ծայրը, խայտահավերը բարձրացնում էին տագնապալից կռնչոցներ. երևի երջանկությունից։ Նույնիսկ մշտապես հանգիստ բադերը արտասովոր անհանգստություն էին ցուցաբերում. նրանք հանկարծ սկսում էին խառնվել իրար, ճչալ ու ընկնել կռվարար աքաղաղների ետևից։

Իսկ մեր ընտանի սագերը, բարձրանալով ցանկապատի վրա, աշխույժ թափահարում էին իրենց հուժկու թևերը, սպառնալով ամեն վայրկյան պոկվել տեղից ու հասնել չվող ազգակիցներին։

Ամեն անգամ, երբ իմ գլխավերևում լսում եմ կռունկների արծաթահնչյուն ձայնը, ես հիշում եմ իմ մանկությունը և մեր բարձր ցանկապատը, որի վրա բարձրանում էին սագերը, միամտաբար կարծելով, թե այդտեղից անպայման կթռչեն դեպի հեռավոր կապույտը։

Հիմա էլ, երբ արդեն սպիտակ գլուխս եմ ծգելով, նայում եմ գարնանային վճիտ երկնքին, ես այնտեղ տեսնում եմ չվող երամների կոր գիծը... Եվ ես փառաբանում եմ ձեզ, իմ սագեր... փառաբանում ձեր եռանդի ու խոյանքի համար, ձեր՝ հավերժ թռչելու տենչանքի համար։

# Մ Ե Դ Ա Լ Ա Կ Ի Ր Ն Ե Ր Ը



Պիոներական սենյակում շատ հուշանվերներ կան, բայց եթե մտնեք սենյակ, երեխաները հըպարտությամբ ցույց կտան մի մեդալ, որ ամրացված է դրուժինայի դրոշին: Իսկ ի՞նչ մեդալ է դա:

... Սովետաշեն տանող ավտոբուսի ուղևորները զարմանքով ու հետաքրքրությամբ էին նայում դպրոցականներին. ու՞ր են գնում այս կարմիր փողկապավորները շաբաթ օրով, կեսօրին: Սովետաշենում ավտոբուսը դատարկվեց: 30 դպրոցականներն իջան ու ոտքով շարունակեցին ճանապարհը:

Երեկոյան նրանք հասան Դըվին, գիշերեցին դպրոցում, իսկ առավոտյան վաղ ուղիղ խաղողի այգիները գնացին ու դիմեցին կոլտնտեսականներին.

— Եկել ենք ձեզ օգնելու:

— Ապրեք, շատ լավ եք արել: Պարզվեց, որ խաղող հավաքելն այնքան էլ հեշտ չէ, ինչպես կարծում էին երեխաները:

— Ճութը էնպես հանեք, որ հատիկները չթափվեն,— տարեց կոլտնտեսական Անդրանիկ քեռին ցույց էր տալիս երեխաներին, թե ինչպես պետք է աշխատել: 37 տարի նա արևահամ ողկույզներ է քաղում, ու դրանք դառնում են աշխարհահռչակ հայկական գինի ու կոնյակ: Այդ տարի Դվինի գինին խմելիս, կոլտնտեսականները հիշեցին, որ դրա մեջ Երևանի Նալբանդյանի անվան դպրոցի աշակերտների աշխատանքն էլ կա՝ Դժոյան Սոնյայի, Հովհաննիսյան Անդրանիկի, Պողոսյան Մուշեղի, Հովհաննիսյան Սուրիկի և մյուս 26 երեխաների ու նրանց ավագ ջոկատավար Ռիմա Կակաշյանի ձեռքի աշխատանքը:

Այս լավ գործը խրախուսվեց, և պիոներները ոգևորվեցին:

— Գնանք Երևանյան լիճը տեսնենք,— մի օր ասաց Ժնևեն Զաքեյանը: Առաջարկը բոլորին հրապուրեց, բայց նրանք գլխի էին ընկնում, որ Ժնևեը ուրիշ մտադրություն ունի:

Եվ իրոք, երբ շրջում էին ապագա լճի ափով, Ժնևեն ասաց.

— Դե, հիմա գործի անցնենք:

Ոչ ոք չառարկեց: Բանվորների հետ աշխատեցին մինչև ուշ երեկո:

— Ե՞րբ կարող ենք լողալ լըճում,— հարցնում էին տղաները:

— Դա կախված . մեզնից, բոլոր երևանցիներից,— ասացին շինարարները:

— Եթե երևանցին ուզում է, որ իր լիճը շուտ ծփա, գոնե մի քար պետք է վերցնի հատակից:

Անցյալ տարի էր դա: Այս տարի, հենց տարեսկզբին Ժնևեը, Սրբուհին, Շողիկն ու մյուսները նորից հիշեցին լիճը.

— Ե՞րբ պատրաստ կլինի:

Ու հիշեցին անծանոթ բանվորի խոսքերը.

— Մեզնից է կախված, երևանցիներից:

Պիոներներն ու կոմերիտականները մեծ խմբով նորից գնացին լճի շինարարությունում աշխատելու:

Նալբանդյանի դպրոցի պիոներները սիրում են աշխատանքը: Արդեն 20 տոննա մետաղի ջարդոն են հավաքել: Նրանք Հոկտեմբերյան պողոտայի ծառերն են խնամում, դպրոցի շըրջակայքն են կարգի բերում, բակը ծաղկազարդում, շաբաթօրյակի են գնում շեֆ՝ էլեկտրատեխնիկական գործարան, դըպրոցում կտրված գույք են վերանորոգում:

Այս բոլոր գործերի համար է, որ երբ ավարտվեց «Շողացե՛ք, լենինյան աստղեր» ստուգատեսը, Արարատ Նավոյանի անվան դրուժինան արժանացավ մեդալի:

Ահա թե ինչ մեդալ է փակցըված դրուժինայի դրոշին և ինչպես են շահել այն:

ԼԻԴԱ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ



Ինչ բան է ուշադրությունը:

Ահա դու կարդում ես ամսագրի այս էջը: Դրա հետ միասին լսում ինչ-որ ձայներ, աչքի տակով նկատում, թե շուրջդ ինչ է կատարվում: Բայց չէ՞ որ մի քանի վայրկյան առաջ այդ բոլորը քո ուշադրությունը չէին շեղում: Ճի՞շտ է: Քո ուշադրությունը ուղղված և կենտրոնացած էր միայն այս էջին: Հենց այսպիսի երևույթն են հոգեբանները կոչում ուշադրություն:

Պարզվում է, որ ուշադրությունները տարբեր են լինում:





Պատի այն կողմում ինչ-որ բան ընկավ և ուժեղ աղմուկ բարձրացավ, լսվեց ինչ-որ մեկի խոսակցության ձայնը: Կամա թե ակամա բարձրացնում ես գլուխդ և ականջ դնում: Իսկ մենք ականջ ենք դնում, որպեսզի հասկանանք, թե ինչ է կատարվում այնտեղ: Այսպես, հաճախ մենք հետաքրքրվում ենք, թե ինչ է կատարվում մեր շուրջը: Այսպիսի ուշադրությունը կոչվում է կողմնորոշող ուշադրություն:

Ահա ուշադրության մի այլ տեսակ:

Կարդում ես արկածային մի պատմվածք, որն այնքան հետաքրքիր է, որ ոչ տեսնում, ոչ էլ լսում ես, թե ինչ է կատարվում շուրջդ: Պատմվածքը կարդում ես ուշադրությամբ, հասկանում ամեն մի մանրուք, ըմբռնում ամեն ինչ: Այդպիսի ուշադրությունը առաջանում է այն բանի հետևանքով, որ տվյալ նյութը քեզ շատ է հետաքրքրում: Այդ ուշադրությունը նույնպես ունի գիտական անուն, որ կոչվում է անկամային ուշադրություն:

Բայց միայն այսքա՞նը: Ոչ: Աշխարհում կա ուշադրության մի այլ տեսակ ևս: Հնարավոր է, որ դու էլ ունես այդ ուշադրությունից: Եթե ունես, ուրեմն դու լուրջ մարդ ես:

Ասենք, թե դու նստած ես դասի և լսում ես ուսուցչին: Նա ամբողջ քառասունհինգ րոպե խոսում է և ինչ-որ բան է բացատրում: Իսկ պատուհանից այն կողմ երեխաները ֆուտբոլ են խաղում: Հարևան նստարանից ինչ-որ մեկը տետրակից թուղթ պատռեց, որ աղավնի պատրաստի... Եթե կարող ես ինքդ քեզ զսպել ուշադրությունդ չշեղել, եթե ցանկանում ես հիմնովին հասկանալ ուսուցչի բացատրածը, ապա քո մեջ կա ամենաթանկագին ուշադրությունը՝ կամային, այսինքն՝ այնպիսինը, որի տերը դու ինքդ ես, որին դու ես իշխում:








Այն մարդը, որն իր մեջ կայուն կամայական ուշադրություն է դաստիարակել, նա վատ սովորել չի կարող:

Մենք առաջարկում ենք ստուգել, արդյոք դու ուշադի՞ր մարդ ես: Փորձիր հաշվել, թե քանի՞ փոքրիկ շրջանակներ կան յուրաքանչյուր հինգ բաժնում: Սկսիր այն բաժնից, որում շրջանակները ամենից քիչ են: Շրջանակների վրա մատ կամ մատիտ շարժելը արգելվում է:

Որքան շատ դու շփոթվես, քեզ մոտ այնքան քիչ է կենտրոնացած ուշադրությունը:

Բայց մի՛ հուսահատվիր. այդպիսի ուշադրություն դու կարող ես քեզ մոտ մշակել ինքդ, եթե լրջորեն մոտենաս այդ խնդրին:

Կարողանո՞ւմ ես արդյոք ուշադրությունդ հավասար բաշխել: Հաշվիր, թե առանձին վերցրած քանի տղամարդ և քանի կին կա այս նկարում: Իսկ հետո մտքումդ հաշվածը կրկնիր: Այսպես. մեկ տղամարդ, մեկ կին, երկու կին, երկու տղամարդ, երեք կին և այսպես շարունակ:



# ԻՆՉՊԵ՞Ս ԵՍ ԴՈՒ ՍՈՎՈՐՈՒՄ




Իսկ այժմ ստուգենք քո ուշադրության մակարդակը: Քանի՞ առարկա կարող ես հիշել, մի քանի վայրկյան այս նկարին նայելուց հետո:

Կարելի՞ է արդյոք վարժեցնել ուշադրությունը: Ահա քեզ մի քանի խորհուրդ.

Երբ լսում ես դու ուսուցչին կամ ինքդ ես տանը պարապում, իսկ այդ պահին ինչ-որ մեկը շեղում է քո միտքը, հրամայիր ինքդ քեզ՝ չշեղվել:

Լսելով ուսուցչի բացատրությունները՝ աշխատիր կարևոր մտքերը երկրորդականից առանձնացնել, իբր թե նրա բացատրածը բաժանում ես գլուխների:

Աշխատիր ուշադիր լսել ուսուցչին, ուշադիր կարդա դասագրքի գլուխները և շուտով կզգաս, որ այդ բոլորը նույնպես հետաքրքիր է, որ այդ բոլորը սկսեց քեզ հետաքրքրել:

### Ահա թե ինչպես է լինում դասի ժամանակ

1. Ընկ. Հովսեփյան, ես կարող եմ կրկնել այն ամենը, ինչ դուք պատմեցիք:
2. Գիտեմ, գիտեմ, այդ դու ես խփում, Լևոն:
3. Ի՞նչ նվեր տալ Գևորգին ծննդյան օրվա առթիվ:
4. Հարկավոր է կենտրոնանալ... Ինչի՞ մասին է պատմում ընկ. Հովսեփյանը:
5. Ոչինչ չի ստացվում, ամենակարևորը չլսեցի... բաց թողեցի.

Լուսանկարները՝ ԶԱՎԵՆ ԲՃՏԻԿՅԱՆԻ











# ՊԻՈՆԵՐ

12 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1967

ՀԼԿԵՄ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Ռ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղարվեստական խմբագիր)

**„Пионер“** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—68—16, 2—59—06։*

ՎՖ 08048։ Պատվեր՝ 1706։ Տպաքանակ՝ 42000։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 12/XII 1967 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։ Գինը՝ 10 կ.


## ՃԱՌԱԳԱՅԹԸ ԾԱՌ Է ԿՏՐՈՒՄ

*Իհարկե, դա արևի ճառագայթ չէ, այլ լազերից է ստացվում։ Ճառագայթը կարելի է ուղղել գերանի կամ ծառի բնի վրա, և փայտի վրա առաջանում է հարթ, մեկուկես միլիմետրի չափով*



*ածխացած կտրվածք։ Դա կատարվում է այն դեպքում, երբ ճառագայթների ամբողջ փունջը ուղղված է մի կետի և ոչ թե ցրված։ Կգա ժամանակ, երբ այդպիսի ճառագայթները կփոխարինեն կացնին և սղոցին։*



## ՀԱՍՑԵ՞Ն ԵՔ ՈՐՈ՞ՆՈՒՄ, ՔԱՐՏԵԶ ԱՌԵՔ

*Զարմանալի է, սակայն աշխարհի ամենամեծ քաղաք Տոկիոյում, որն ունի տասնմեկ միլիոն բնակչություն, համարյա բոլոր փողոցները, բացի ամենակենտրոնականներից, անուններ չունեն։ Եվ դեռ ավելին՝ տներն էլ համարակալված չեն։ Որպեսզի ինչ-որ չափով հնարավոր լինի որոնած հասցեն գտնել, հրատարակվում են Տոկիոյի փոքրիկ քարտեզներ։ Եվ երբ մարդ են հրավիրում տուն, հաճախ տալիս են նաև այդ քարտեզը, ուր տան վրա խաչով նշան է արվում։*




*Ջրիմուռները աճում են ոչ միայն ջրում և ոչ միայն տաք ջրում: Պարզվում է, որ ավելի քան 140 տեսակ միկրոսկոպիկ ջրիմուռներ ու սունկեր աճում են ձյան ու սառույցի մեջ:*

# ԿԱՐՄԻՐ ՁՅՈՒՆ

Հիմալայան լեռների ամենաբարձր գագաթները հետզհետե ավելի են գրավում ալպինիստների ուշադրությունը: Ամբողջ աշխարհից կտրված, բարձր լեռնային գյուղերում, մեկ էլ տեսար, հայտնվում են եվրոպացիների խմբեր: Այդ գյուղերի բնակիչները շատ հյուրասեր ժողովուրդ են: Նրանք սիրով են օգնում ալպինիստներին և ուղեկցողներ են տալիս նրանց: Սակայն միշտ չէ, որ արշավները պսակվում են հաջողությամբ:

Մի անգամ հուլիսի վերջերին, ուշ երեկոյան Թխամի գյուղին մոտեցավ անգլիացիների մի արշավախումբ: Անսովոր, տագնապալի լռությունը խզվեց լեռների ատամնավոր կատարների մեջ կորած բուդդայական փոքրիկ Գոնդախ մենաստանից լսվող շեփորների և ծնծղայի ձայներից: Այս անգամ անգլիացիներին չհաջողվեց ուղեկցող վարձել: Գյուղում թագավորում էր խոր վհատությունը: Միայն առավոտյան նրանք հասկացան դրա պատճառը: Ձյունափայլ գագաթներից մեկը ծածկված էր արյան բծերով: Մինչև երեկո ալպինիստները հետևում էին, թե ինչպես կարմիր բծերը մեծանում և միանում էին իրար: Մոտալուտ աղետի սարսափի ըզգացումը փոխանցվեց և անգլիացիներին, թեև նրանց հայտնի էր կարմիր բծերի առաջացման պատճառը:

Արյունոտ ձյունը սարսափեցնող տպավորություն գործեց մոտ երկու հարյուր տարի առաջ բևեռը ուսումնասիրող արշավախմբի անդամների վրա:

Ձյան տարօրինակ կերպով գունավորվելու պատճառը երկար չմնաց գաղտնի: Գիտնականներին հաջողվեց պարզել, որ ձյանը գույն են տալիս նրա մակերեսը ծածկող միկրոսկոպիկ միաբջիջ ջրիմուռները: Հետագայում այդ ջրիմուռները, որոնց անվանեցին ձյան խլամիդոմոնադներ, հանդիպում էին բևեռային տարբեր շրջաններում, ինչպես նաև լեռնագագաթների հավերժական ձյան մեջ, այդ թվում և մեզ մոտ՝ Կովկասում:



Այժմ գիտնականներին հայտնի են 140-ից ավելի միկրոսկոպիկ ջրիմուռներ և սունկեր, որոնք մշտապես ապրում են սառույցի ու ձյան մեջ: Դրանցից շատերը մանուշակագույն, կարմիր, շագանակագույն կամ կանաչ գույն ունեն:

Որպեսզի խլամիդոմոնադը լավ աճի, հարկավոր է արևի լույս ու սառը եղանակ: Այդ է պատճառը, որ նա մեծ մասամբ հանդիպում է բևեռային շրջաններում կամ բարձր լեռների գագաթներին: Հասկանալի է, թե ինչու են այդ միաբջիջ ջրիմուռները հայտնաբերվել համեմատաբար վերջերս:

Ձյան ջրիմուռների բացառիկ ցրտակայունությունը, որ սկզբում ապշեցնում էր գիտնականներին, այժմ զարմանք չի առաջացնում, պարզվեց, որ նույնիսկ զարգացած շատ ուրիշ օրգանիզմներ, առանց էական վնասների, կարող են դիմանալ ավելի ուժեղ սառեցումների:

Գիտնականները ենթադրում են, որ ջրիմուռները օժտված են կիսահաղորդիչների հատկություններով: Էլեկտրական հոսանք առաջացնելու համար անհրաժեշտ է, որ կիսահաղորդիչների սարքի մի մասը տաքացվի, իսկ մյուսը՝ սառեցվի: Որքան մեծ լինի նրանց ջերմաստիճանների տարբերությունը, այնքան շատ էլեկտրական հոսանք կստացվի:

Նույն բանը կատարվում է ձյան ջրիմուռների մոտ: Մի կողմը ջերմանում է արևից, մյուսը՝ սառչում: Երևի, հենց այդտեղ էլ նրանք իրենց գոյության պահպանման համար էներգիա են ստանում:

Կգա ժամանակ, որ բուսաբանները լուրջ կերպով կզբաղվեն ցրտադիմացկուն միկրոօրգանիզմներով և մարդկության համար օգտակար հայտնագործություններ կկատարեն: Եվ բացառված չէ, որ բևեռային ձյունածածկ անսահմանությունը կվերածվի բերքի դաշտերի:

# ԷԴԻԿՆ ՈՒ ՊԵՏԻԿԸ

1. Էդիկը դեռ չէր հանդիպել իրենից լավ օղակ նետողի։ Մի անգամ Պետիկը նրան ասաց.

— Էդիկ, արի օղակ նետենք։

Էդիկը քմծիծաղ տալով պատասխանեց.

— Օղա՞կ, քեզ հե՞տ։

— Ինձ հետ, ի՞նչ կա որ։

— Դու դեռ մի քիչ բոյ քաշի, հետո։



— Լավ, Էդիկ ջան, արի հիմա մի անգամ խաղանք, իսկ հետո, երբ որ բոյ քաշեմ, ամեն օր կխաղանք։



— Դե լավ, որ այդքան խնդրում ես, խաղանք։ Հերթը քոնն է։



2. — Տասից չո՞րս, Պետիկ։

3. — Մեկ, չընկավ, երկու, չընկավ...յոթ, չընկավ։

Էդիկի ձեռքին երեք հատ օղակ էր մնացել։ Եթե այդ երեքն էլ նետեր, միևնույն է, նա հաղթել



Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

չէր կարող։ Եվ ստիպված Էդիկն ասաց Պետիկին.

— Կատակ եմ անում, կատա՛կ։ Դու դեռ մի քիչ բոյ քաշի, հետո ես լուրջ կխաղամ հետդ։

4. Պետիկը գլխով համաձայնության նշան արեց ու հետն էլ ասաց.

— Էդիկ ջան, հո բոյով չե՞ն խաղում օղակ, ձեռքով են խաղում, ձեռքով։

ՍՈՒՐԵՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ